Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ




№ 15 ՕԳՈՍՏՈՍ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։


# ԱՌԱՋԻՆ ՊԱՏՎԻՐԱՆԸ

Վրա է հասել գյուղատնտեսական աշխատանքների ամենալարված և ամենապատասխանատու շրջանը։ Ռեսպուբլիկայի կոլխոզային և սովխոզային դաշտերում սկսվել և ծավալվում է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը։

Կոլխոզային գյուղի աշխատավորները մեծ եռանդով հավաքում են իրենց խաղաղ, ստեղծագործ աշխատանքի պտուղները։ Գյուղի հայրենասերների անձնվեր աշխատանքը պսակվել է հաջողությամբ՝ բերքն ամենուրեք առատ է։ Ամեն օր ռեսպուբլիկայի կոլխոզներից ուրախալի լուրեր են ստացվում հացահատիկի բարձր բերքի մասին։

Անսահման նվիրված լինելով Լենին-Ստալինի պարտիայի մեծ գործին, կոլխոզային գյուղի հայրենասերները անձնվիրաբար պայքարում են կոլխոզների կազմակերպչական-տնտեսական հետագա ամրապնդման, սոցիալիստական գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի համար։ Այդ մասին է վկայում այն անդուլ աշխատանքը,

որ այժմ գյուղի աշխատավորները կատարում են բերքն արագ և անկորուստ հավաքելու համար։

Այս տարվա բերքահավաքը ծավալվել է քաղաքական և աշխատանքային հսկայական վերելքի պայմաններում։ Ստորագրելով խաղաղության կողմնակիցների Մշտական Կոմիտեի Ստոկհոլմի Կոչի տակ, կոլխոզային գյուղի հայրենասերներն արտահայտել են իրենց միահամուռ կամքն ու ջերմ պատրաստակամությունը՝ անդուլ և անձնվեր աշխատանքով պայքարել խաղաղության ամրապնդման համար։ Եվ ամենուրեք՝ կոլխոզներում, սովխոզներում, ՄՏ կայաններում ծավալվում է սոցիալիստական հզոր մրցությունը, գյուղի աշխատավորները կանգնում են խաղաղության ստախանովյան հերթափոխի՝ ցույց տալով հայրենասիրական և անձնվեր աշխատանքի վառ օրինակներ։

Բերքահավաքին զուգընթաց ռեսպուբլիկայի կոլխոզները և կոլխոզնիկները հսկայական խանդավառությամբ ձեռնամուխ են եղել պետական պարտավորությունների կատարմանը։

Պետության շահը բարձր է ամեն ինչից,— այդ գիտակցությամբ տոգորված, ռեսպուբլիկայի կոլխոզները հաջողությամբ կատա-



րում են իրենց առաջին պատվիրանը՝ հացամթերումները և դրանով իսկ իրենց նոր ավանդն են մտցնում մեր Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման գործում։

Արդեն հաղորդվել է այն մասին, որ Բերիայի, Ջանգիբասարի, Արտաշատի, Էջմիածնի, Իջևանի շրջանների կոլխոզներն ու կոլխոզնիկները ժամկետից շուտ կատարել են սոցիալիստական պետությանը հացահատիկ հանձնելու և ՄՏ կայանների բնավճարի պլանները։ Գնալով ավելի ու ավելի մեծ թվով կոլխոզներ են մասնակցում հացամթերումներին։

Բերքահավաքը և հացամթերումները լուրջ քննություն են գյուղական պարտիական կազմակերպությունների և ագիտատորների համար։ Ագիտատորների խնդիրն է՝ պարտկազմակերպությունների գլխավորությամբ կազմակերպել կոլխոզային աշխատավորության արտադրական և քաղաքական վերելքը՝ բերքահավաքը և մթերումները բոլշևիկորեն անցկացնելու համար։

Այս օրերին ագիտատորները պետք է ավելի լայնորեն ծավալեն քաղաքական-մասսայական աշխատանքը կոլխոզային դաշտերում։ Տնտեսական հաջողությունները, նրանց ամրությունն ու տևականությունը,—

տավորեցնում է ընկեր Ստալինը,— ամբողջովին և լիովին կախված են պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքների հաջողություններից։ Ինչքան բարձր է մեր մարդկանց սոցիալիստական գիտակցականությունը, այնքան ավելի լավ են հասկանում իրենց խնդիրները, այնքան նրանք ավելի լավ են աշխատում իրենց պոստերում։

Պարտիական կազմակերպությունների մարտական օգնականը նրա կատարած քաղաքական-մասսայական աշխատանքում՝ գյուղական ագիտատորներն են։ Բոլշևիկյան ագիտատորը կոլխոզային գյուղի աշխատավորների գիտակցությանն է հասցնում պարտիայի ու կառավարության որոշումները, նրանց մոբիլիզացնում այդ որոշումների կենսագործման համար։

Ագիտատորի խոսքը մեծ ուժ ունի։ Նրան լսում են, հավատում։ Այժմ, երբ կոլխոզային գյուղում վրա են հասել աշխատանքային եռուն օրեր, պետք է ավելի բարձր ու հատու հնչի ագիտատորի ճշմարտացի խոսքը։ Ագիտատորը պետք է ընթանա բերքահավաքի և հացամթերումների հաջող անցկաց-



ման համար պայքարողների առաջին շարքերում։

Մեր յուրաքանչյուր գյուղում, յուրաքանչյուր սկզբնական պարտիական կազմակերպությունում կա ագիտկոլեկտիվ, որտեղ ընդգրկված են բազմաթիվ պարտիական և անպարտիական ագիտատորներ։ Եվ այնտեղ, որտեղ պարտիական կազմակերպությունն ամենօրյա ղեկավարություն է ցույց տալիս ագիտկոլեկտիվին, այնտեղ ավելի բեղմնավոր, ավելի արդյունավետ է նրա աշխատանքը. այնտեղ, որտեղ քաղաքական աշխատանքը հմտորեն զուգակցվում է տնտեսական խնդիրների հետ, այնտեղ հաջողությամբ են կատարվում պետական բոլոր տեսակի առաջադրանքները։

Վերցնենք, օրինակ, Ախտայի շրջանի Արզական գյուղի կոլխոզի սկզբնական պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը։ Այդ կոլեկտիվում ընդգրկված են կոլխոզի բրիգադիրները, բարձր բերքի վարպետներ, գյուղական ինտելիգենցիայի ներկայացուցիչներ։ Այդ մարդիկ մեծ հարգանք են վայելում ամբողջ գյուղում։ Ագիտկոլեկտիվը մեծ ազդեցություն է գործում կոլխոզի կյանքի բոլոր կողմերի վրա, կոլխոզնիկների գործունեության վրա։ Գյուղում կատարվող

նշանավոր ոչ մի իրադարձություն, ոչ մի կամպանիա չի վրիպում նրա ուշադրությունից։

Ագիտկոլեկտիվի աշխատանքը ցայտուն կերպով դրսևորվում է այժմ՝ բերքահավաքի և հացամթերումների օրերին։ Արզականի կոլխոզը շրջանում առաջինը կատարեց հացամթերումները՝ պետությանը հանձնեց անցյալ տարվանից ավելի շատ և որակով բարձր հացահատիկ։ Դա արզականցիների հայրենասիրության նոր դրսևորումն է, նրանց նոր, մեծ հաջողությունը։

Այդ հաջողության մեջ իրենց բաժինն ունեն գյուղական ագիտատորները։ Երբ նոր էր սկսվել բերքահավաքը, պետք էր տեսնել, թե ինչպիսի եռանդուն աշխատանք էին կատարում նրանք հացի պետական պարտավորությունը ժամկետից շուտ կատարելու համար։ Նրանք անցնում էին բրիգադից-բրիգադ, լինում էին կոմբայնների մոտ, կալերում, կոլխոզնիկներին բացատրում հացամթերման պլանի կատարման տնտեսական և քաղաքական մեծ նշանակությունը մեր երկրի հզորության հետագա ամրապնդման գործում։ Ագիտատորները կոլխոզնիկների համար հակիրճ զրույցներ էին կազմակերպում՝ «Հացը մեր երկրի հարստությունն է,



նրա հզորությունը», «Պետության շահը բարձր է ամեն ինչից», «Հացամթերումները բերքահավաքի կենտրոնական խնդիրն են» և այլ թեմաներով։

Ուշագրավ է ագիտատոր Գ. Հովհաննիսյանի զրույցը՝ «Պայքարը բերքահավաքը սեղմ ժամկետում ավարտելու համար՝ պայքար է խաղաղության համար» թեմայով։

Նա իր զրույցն սկսեց ուղղակի.

— Այ, դու, ընկեր Մելքոնյան,— դիմելով կոլխոզնիկներից մեկին, ասաց ագիտատորը,— ստորագրե՞լ ես Ստոկհոլմի Կոչը։

— Բոլորս ենք ստորագրել, ձայնեցին տեղերից։

—Ստորագրել ենք և երդվել,—միջամտեց մեկ ուրիշ կոլխոզնիկ,— այսուհետև է՛լ ավելի լավ աշխատել, է՛լ ավելի բարձր բերք ստանալ, ավելի շատ հաց տալ հարազատ պետությանը։

Հենց սկզբից շարժելով կոլխոզնիկների հետաքրքրությունը դեպի իր զրույցը, ագիտատորն այնուհետև խոսում է այն հսկայական նշանակության մասին, որ ունեն հացամթերումները։

Հացը,— ասում է ագիտատորը,— կոլխոզների հանրային սեփականությունն է, մեր Հայրենիքի սեփականությունը։ Հացը

մեր երկրի հարստությունն է. ինչքան շատ հաց լինի, այնքան ուժեղ ու հզոր կլինի մեր երկիրը։ Մեզանից յուրաքանչյուրն իր աշխատանքով կարող է և պետք է նպաստի խաղաղության գործին։ Ագիտատորը հմտորեն, համոզիչ կերպով ցույց է տալիս, թե ինչպես կոլխոզնիկներից յուրաքանչյուրի անձնական աշխատանքը ուղղակիորեն կապ ունի մեր ընդհանուր գործի հետ, կապ ունի աշխարհում խաղաղությունն ապահովելու հետ։

Ագիտատորի այդպիսի զրույցի խոսքերը թափանցում են կոլխոզնիկների սիրտը։ Զրույցից հետո կոլխոզնիկները պարտավորվում են ամեն կերպ արագացնել հացահատիկի հունձը, տեղափոխումն ու կալսումը, օրինակելի կազմակերպվածությամբ անցկացնել հացամթերումները։ Ագիտատորի զրույցից հետո կոլխոզի կալում և դաշտերում երևացին լոզունգներ և պլակատներ՝ «Ավելի շատ հացահատիկ հարազատ պետությանը», «Պատվով կատարենք առաջին պատվիրանը»։ Եվ նրանք կատարեցին իրենց խոստումը։ Անցյալ տարվանից 12 օր շուտ կատարեցին հացի պետական պարտավորությունը։

Արզականի ագիտկոլեկտիվի և ագիտա-



տորների օրինակը եզակի չէ։ Այդպիսի ագիտատորներ կան մեր ամեն մի գյուղում։

Այո՛, ագիտատորները մեծ ուժ են գյուղում և այդ ուժը պետք է ի սպաս դրվի սոցիալիստական դաշտերի բարձր բերքն արագ, անկորուստ հավաքելու և առաջին պատվիրանը պատվով կատարելու համար։

Ագիտատորները պետք է անցկացնեն մարտական, նպատակասլաց, քաղաքականապես սուր զրույցներ և զեկուցումներ։ Նրանք պետք է ջերմորեն պաշտպանեն և տարածեն նորը և առաջադիմականը գյուղում, մասսայականացնեն և տարածեն բերքահավաքի և հացամթերումների առաջավորների փորձը։ Միաժամանակ ագիտատորները պետք է պայքար մղեն հետամնաց տրամադրությունների, մարդկանց գիտակցության մեջ եղած մանր սեփականատիրական մնացորդների դեմ։ Ագիտատորը պետք է լայնորեն ծավալի թերությունների բոլշևիկյան քննադատությունը և գյուղի բոլոր աշխատողներին մոբիլիզացնի՝ հացամթերումները, հարազատ պետության հանդեպ ունեցած պարտքը պատվով կատարելու համար։

Դեպի գործ, ընկեր ագիտատորնե՛ր։ Պատվով կատարենք առաջին պատվիրանը։

# ԱՃՈՒՄ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԶՈՐՈՒԹՅՈՒՆԸ

*Սովետական ժողովուրդը հսկայական գոհունակությամբ դիմավորեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության Հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ Այդ արդյունքները վեհ են և բերկրալից։ Սովետական յուրաքանչյուր մարդու սիրտ օրինական հպարտության զգացմունքով է լցվում, երբ նա խորանում է փառապանծ հաղթանակների թվերի մեջ։ Այդ թվերում սովետական մարդիկ տեսնում են իրենց աշխատանքային ջանքերի, իրենց ստեղծագործության, Հայրենիքի նկատմամբ իրենց հայրենասիրական ծառայության մարմնավորումը։ Ածխահատներն ու նավթագործներն ավելի ու ավելի շատ ածուխ ու նավթ են արդյունահանում։ Մետալուրգներն ավելի ու ավելի շատ*



*չուգուն, պողպատ և գլանվածք են տալիս, մեքենաշինարարներն ավելի ու ավելի շատ մեքենաներ, դազգահներ և ագրեգատներ են տալիս։ Միլիոնավոր կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների պայքարը բարձր բերքի, անասնաբուծության բարձր մթերատվության, բնության վերափոխման համար նշանավորում է նոր հզոր գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Մեր ամբողջ ժողովրդական տնտեսությունը նոր վերելք է ապրում։*

*1950 թվականի երկրորդ եռամսյակի պլանն արդյունաբերության համախառն արտադրանքի գծով կատարվել է 103 տոկոսով։ ՍՍՌ Միության արդյունաբերության ամբողջ արտադրանքը 1950 թվականի երկրորդ եռամսյակում 1949 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ աճել է 21 տոկոսով։*

*Պլանից դուրս արտադրվել է զգալի քանակությամբ պողպատ, գունավոր մետաղ, քարածուխ, նավթ, էլեկտրաէներգիա, ավտոմոբիլներ, շինանյութեր, գործվածքներ, կոշկեղեն և մասսայական սպառման այլ առարկաներ։*

*Բոլոր կապիտալ աշխատանքների ծավալը մեր երկրում 1950 թվականի երկրորդ եռամ-*

սյակում կազմեց անցած տարվա երկրորդ եռամսյակի 131 տոկոսը։ Զգալիորեն ավելացել է ինչպես երկաթուղային, այնպես էլ գետային և ծովային տրանսպորտի բեռնաշրջանառությունը։

Մեծ հաջողություններ են ձեռք բերել մեր գյուղատնտեսության աշխատավորները։ Ամբողջ երկրում հաջողությամբ է ավարտվել գարնանացանը։ Ցանքատարածությունների աճը 1949 թվի համեմատությամբ կազմել է 6 միլիոն հեկտար։ Աճել է գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությունը։ Ամբողջ երկրում ծավալվել է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը։ Կոլխոզային գյուղացիությունը լուրջ հաջողություններ է ձեռք բերել հանրային մթերատու անասնաբուծության զարգացման 1949—1951 թ. թ. եռամյա պլանի կենսագործման բնագավառում։ Կոլխոզներում 1950 թվականի առաջին կիսամյակի վերջում հանրային խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1949 թվականի առաջին կիսամյակի վերջում եղած գլխաքանակի համեմատությամբ ավելացել է 15 տոկոսով, խոզերինը՝ 52 տոկոսով, ոչխարներինն ու այծերինը՝ 16, ձիերինը՝ 18 տոկոսով, իսկ թռչուններինը՝ մոտ 2 անգամ։ Բերկրալից են



քնության վերափոխման ստալինյան պլանի իրագործման արդյունքները։ Ընթացիկ տարվա գարնանը կոլխոզները, անտառային տնտեսությունները և սովխոզները տնկել և ցանել են ավելի քան 700 հազար հեկտար դաշտապաշտպան անտառատունկեր կամ երկուս ու կես անգամ ավելի, քան 1949 թվականի գարնանը։ Դաշտապաշտպան անտառատնկումների 1950 թվականի պլանը կատարվել է ժամկետից շուտ։

Հսկայական հետաքրքրություն են ներկայացնում այն թվերը, որոնք պատմում են բանվորների և ծառայողների թվի ավելացման, աշխատանքի արտադրողականության աճման մասին։ 1949 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, 1950 թվականի երկրորդ եռամսյակում բանվորների և ծառայողների թիվն ավելացավ 2,4 միլիոն մարդով, իսկ արդյունաբերության բանվորների աշխատանքի արտադրողականությունն անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճեց 12 տոկոսով։

Անշեղորեն բարձրանում է սովետական ժողովրդի կուլտուրական մակարդակը։ Բավական է ասել, որ այս տարվա երկրորդ եռամսյակում բարձրագույն ուսումնական

հաստատությունների, տեխնիկումների և մասնագիտական միջնակարգ ուսումնական այլ հաստատությունների վերջին կուրսերում սովորում և պատրաստվում էին այդ դպրոցներն ավարտելու, ներառյալ հեռակայողները, մոտ կես միլիոն մասնագետ։ 1950 թվականի առաջին կիսամյակում հրատարակված գրքերի տիրաժն անցած տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ ավելացավ ավելի քան 15 տոկոսով։

Հավասարների մեջ հավասար, ամբողջ սովետական ժողովրդի հետ համաքայլ են ընթանում Հայաստանի աշխատավորները։ Ռուս մեծ ժողովրդի և մեր Հայրենիքի մյուս ժողովուրդների եղբայրական օգնության շնորհիվ, պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության և օգնության շնորհիվ, Հայաստանը մեծ հաջողություններ է ձեռք բերել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։

Օրերս հրապարակվեց Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Վիճակագրական Վարչության Հաղորդագրությունը «Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի երկրորդ եռամսյակի Պետական պլանի կատարման արդյունքների մասին», Հայաստանի աշխատա-



վորները երկրորդ եռամսյակում նոր հաջողություններ են ձեռք բերել ժողովրդա-տնտեսության պլանները կատարելու գործում։ Հաջողությամբ է կատարվել արդյունաբերական համախառն արտադրանքի թողարկման պլանը։ Այսպես, երկրորդ եռամսյակում 26 տոկոսով ավելի արտադրանք է թողարկվել, քան անցած տարվա համապատասխան ժամանակամիջոցում։ Աճել է արդյունաբերական արտադրանքի այնպիսի կարևորագույն տեսակների արտադրությունը, ինչպիսիք են՝ պղինձը, ավտոդողերը, ավտոկամերաները, բրդեղեն և մետաքսեղեն գործվածքները։

Զգալի են հաջողությունները գյուղատնտեսության բնագավառում։ Գյուղատնտեսական աշխատանքներն այս տարվա երկրորդ եռամսյակում ավելի կազմակերպված և ագրոտեխնիկական ավելի բարձր մակարդակով են կատարվել, քան 1949 թվականին։ Գյուղատնտեսական կուլտուրաների ցանքը հիմնականում ավարտվեց 5—20 օր ավելի շուտ, քան անցած տարի։ Զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսության մեքենայացման մակարդակը։ Ռեսպուբլիկայի ՄՏ կայանների թիվը 1949 թվականի հուլիսի մեկի համեմատությամբ, ավելացել է 10 տոկո-

սով, իսկ տրակտորային պարկի կարողու-
թյունը՝ 34 տոկոսով։ Էլ ավելի է բարե-
լավվում Սովետական Հայաստանի աշխա-
տավորների կուլտուրական մակարդակը,
օր-ավուր աճում է նրանց բարեկեցու-
թյունը։ Դրա պերճախոս վկայությունն են
Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչու-
թյան Հաղորդագրության մեջ կուլտուրական
շինարարության, առողջապահության, քա-
ղաքային շինարարության վերաբերյալ թվե-
րը։

Այժմ ռեսպուբլիկայի բոլոր անկյուննե-
րում ծավալվել է սոցիալիստական մրցու-
թյուն Հայաստանում սովետական իշխանու-
թյուն հաստատվելու 30-րդ տարեդարձն ար-
ժանավայել կերպով դիմավորելու համար։
Ֆաբրիկաներից և գործարաններից լուրեր են
ստացվում արտադրական պլանները հաջո-
ղությամբ կատարելու մասին։ Հայ ժողո-
վուրդը բոլոր ջանքերը գործադրում է ձեռք
բերված հաջողությունները ամրապնդելու և
հետպատերազմյան հնգամյակը ժամկետից
շուտ կատարելու համար մղվող համաժողո-
վրդական պայքարում։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգաց-
ման բնագավառում ձեռք բերված այս հո-
յակապ նվաճումները նոր ուժով են հաս-



տատում սովետական հասարակարգի, սո-
վետական պետական կարգի կենսունակու-
թյունը, տնտեսության սոցիալիստական
սիստեմի գերազանցությունը։

Սովետական մարդիկ պարզ կերպով
հասկանում են, որ հենց իրենցից, իրենց ե-
ռանդից, կամքից, հաստատակամությունից
է կախված հարազատ երկրի տնտեսական
հզորության հետագա վերելքը և մեր հայրե-
նիքի բոլոր ժողովուրդների նյութական բա-
րեկեցության ու կուլտուրական մակարդա-
կի հետագա բարձրացումը։

Հակառակ պատկեր է ներկայացնում կա-
պիտալիզմի աշխարհը։ Այնտեղ ավելի ու
ավելի ուժեղ են դրսևորվում խորացող տըն-
տեսական ճգնաժամի նշանները։ Բուրժուա-
զիան կատաղի հարձակում է գործում աշ-
խատավորների կենսամակարդակի վրա. ի-
ջեցվում է աշխատավարձը, բարձրանում են
առաջին անհրաժեշտության առարկաների
գները, աճում է գործազրկությունը։ Գործա-
զուրկների և կիսագործազուրկների թիվը
կապիտալիստական երկրներում 45 միլիոն
մարդուց ավելի է։ Անվստահությունը վաղ-
վա օրվա նկատմամբ, գործազրկություն —
ահա թե ինչն է առաջին հերթին բնորոշ կա-

պիտալիստական երկրների աշխատավոր մարդկանց համար։

Մահացող կապիտալիստական հասարակարգն այդ դրությունից ելք է փնտրում պատերազմի մեջ։ Ամերիկա-անգլիական իմպերիալիստները թշնամական ակտ կատարեցին խաղաղության դեմ, ռազմական ինտերվենցիա սկսելով Կորեայում իրենց ցամաքային, ծովային և օդային ուժերի միջոցով։ Ամերիկյան ավիացիան բարբարոսական հարձակումներ է գործում կորեական խաղաղ քաղաքների ու գյուղերի վրա, ավերում է բանվորական ավաններն ու քաղաքային թաղամասերը, տոննաներով մահաբեր բեռ է նետում դպրոցների ու հիվանդանոցների վրա, սպանում է ծերունիներին ու երեխաներին։

Ամբողջ առաջավոր մարդկությունը հիացմունքով է հետևում ազատասեր կորեական ժողովրդի՝ իր ազատության համար մղվող հերոսական պայքարին։ Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը միաձայն պահանջում է՝ «Ձեռքներդ հեռու Կորեայից»։

Սովետական ժողովուրդը խորապես շահագրգռված է խաղաղությունը պահպանելու համար, քանի որ իր բոլոր պլանները, իղձերն ու հույսերը նա կապում է իր խաղաղ,



ստեղծարար աշխատանքի հետ, որը մեր Հայրենիքն ավելի ու ավելի հզոր է դարձնում, ավելի ու ավելի հարուստ և գեղեցիկ, որը սովետական աշխատավորներին նորանոր բարիքներ ու բերկրանք է բերում։ Սովետական երկրին՝ ամբողջ աշխարհում խաղաղության պատվարին տալ ավելի շատ հացահատիկ, մետաղ, ածուխ, նավթ, գործվածք, մեքենա ու դազգահ—ահա մեր լավագույն պատասխանը նոր պատերազմի հրձիգների ոտնձգություններին։

Սովետական ժողովուրդն ապրում է ստալինյան մեծ ճյուղխայում։ Նա կանգնած է դեպի նորանոր հաղթանակներ տանող ճիշտ ուղու վրա, վստահորեն է նայում վաղվա օրվան, որը նրան հասցնելու է կոմունիզմի գագաթներին։ Դրա գրավականն է միլիոնավոր սովետական մարդկանց անձնվեր աշխատանքը, որոնք առաջ են ընթանում մեր սիրելի առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի իմաստուն առաջնորդությամբ։

Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՈՒԺԵՐՆ ԱՆՊԱՐՏԵԼԻ ԵՆ

Վերջերս Երևանի Կոնսերվի գործարանի մրգի ցեխում կազմակերպվեց զրույց՝ «Խաղաղության ուժերն անպարտելի են» թեմայով: Զրույցն անցկացրեց ցեխի ագիտատոր ընկ. Ջ. Սելիմյանը:

Ստորև տպագրում ենք ընկ. Սելիմյանի զրույցի սղագրությունը:

*Ամբողջ աշխարհում կայուն և երկարատև խաղաղության համար, ատոմային զենքն արգելելու համար սկսված շարժումը գնալով ավելի մեծ թափ ու ծավալ է ստանում: Աշխարհի բոլոր երկրներում միլիոնավոր հասարակ մարդիկ իրենց հզոր ձայնն են բարձրացրել ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության դեմ, որը փորձում է աշխարհի ժողովուրդներին նորից նետել արյունալի սպանդի մեջ՝ հանուն Ուոլլ-Ստրիտի մագնատների շահերի:*

*Ժողովուրդները պատերազմ չեն ցանկա-*



*նում: Հարյուր միլիոնավոր մարդիկ համախմբված են խաղաղության կողմնակիցների կազմակերպած հզոր ճակատում, ճակատ, որնահեղ ուժ է դարձել և ընդունակ է սանձահարելու պատերազմի հրձիգներին, խափանելու նրանց հանցավոր պլանները:*

*Վերջին տարիների իրադարձությունները լիակատար կերպով հաստատեցին ընկեր Ժդանովի խոսքերն այն մասին, որ իմպերիալիստական, հակադեմոկրատական ճամբարն ԱՄՆ-ի գլխավորությամբ նպատակ է դրել պայքարել սոցիալիզմի և դեմոկրատիայի դեմ, նախապատրաստել նոր իմպերիալիստական պատերազմ, ստրկացնել մյուս երկրներին ու ժողովուրդներին, բռնի կերպով հաստատել ամերիկա-անգլիական իմպերիալիզմի համաշխարհային տիրապետություն:*

*Ամերիկյան իմպերիալիստները «Մարշալի պլանով» տնտեսապես ստրկացրին Արևմտյան Եվրոպայի երկրները, ստեղծեցին Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկը, Գերմանիան պառակտեցին և վերականգնում են Արևմտյան Գերմանիայի ռազմական արդյունաբերությունը, աշխարհի տարբեր մասերում ստեղծում են ռազմա-օդային և ռազմա-ծովային բազաներ, Ճապոնիան ռազ-*

մական պլացդարմ են դարձրել Սովետական Միության և Ասիայի ժողովուրդների դեմ պատերազմելու համար։

Բայց Կորեական դեպքերը էլ ավելի լիակատարությամբ մերկացրին ամերիկյան իմպերիալիզմի զազրելի դեմքը։ Այդ դեպքերը ցույց տվին, որ ամերիկյան իմպերիալիստները ոտնահարելով միավորված ազգերի կազմակերպության Կանոնադրությունը, ագրեսիայի նախապատրաստությունից անցել են ագրեսիայի ուղղակի ակտերի։

Ամերիկյան կառավարող շրջանները նախապատրաստեցին և իրականացրին Լի Սին Մանի բանդաների պրովոկացիոն հարձակումը Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի դեմ։ Այդ պրովոկացիոն հարձակումը նախապես մշակել և նախապատրաստել էին ամերիկյան իմպերիալիստները՝ նպատակ ունենալով զավթել Հյուսիսային Կորեան, ամբողջ Կորեան դարձնել ամերիկյան գաղութ և պլացդարմ՝ Սովետական Հեռավոր Արևելքի և Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի վրա հարձակվելու համար։

Ահա ընկերներ, նայեցեք այս լուսանկարին։ ԱՄՆ-ի պետական դեպարտամենտի խորհրդական Դալլեսը ամերիկյան և լիսինմանական սպաներով շրջապատված,



խրամատում նայում է այն տեղամասի քարտեզը, որտեղ շուտով պետք է սկսվեր լիսինմանական զորքերի հարձակումը Հյուսիսային Կորեայի վրա։ Լուսանկարի ձախ կողմում կանգնած է Կորեայում ԱՄՆ-ի դեսպան Մուչչոն և հեռադիտակով դիտում է հյուսիս-կորեական տերիտորիան։ Դա լուսանկարել է ամերիկյան թղթակիցը, Կորեայում պատերազմական գործողությունները սկսվելուց մի քանի օր առաջ։

Ամերիկյան իմպերիալիստները լիովին մերկացված են հանցագործության մեջ, նրանց չհաջողվեց իրենց հափշտակողական պատերազմը կորեական ժողովրդի դեմ քողարկել ո՛չ Միավորված Ազգերի կազմակերպության դրոշակով, և ո՛չ էլ Անվտանգության Խորհրդի անօրինական որոշումներով։

Ամբողջ աշխարհի խաղաղասեր և ազատասեր ժողովուրդները, որոնք անհուն զայրույթով են լցված ամերիկյան զավթիչների դեմ, ջերմորեն ողջունեցին խաղաղության մեծ դրոշակակիր Ի. Վ. Ստալինի պատասխան նամակը Հնդկաստանի պրեմյեր-մինիստր Ներուին՝ կորեական կոնֆլիկտը խաղաղ կերպով լուծելու մասին։ Իսկ ի՞նչպես վերաբերվեցին դրան ամերիկյան իմպերիալիստները։ Տրումենը ոչ միայն մերժեց Սովե-

տական կառավարության խաղաղասիրական առաջարկը, այլև մի քանի օր հետո կոնգրեսին իր ուղղած ուղերձում պահանջեց՝ «մենք պետք է ընդլայնենք ռազմական միջոցառումների մեր ծրագիրը և նրա հետ կապված ծրագրերը...»: Այսպիսով, ամերիկյան մոնոպոլիստները ցույց տվին, որ նրանք ծարավ են արյան, որ նրանք ցանկանում են մարդկությանը նետել նոր արյունահեղ սպանդի մեջ:

Ամերիկյան իմպերիալիստները, իհարկե, չեն սահմանափակվում Կորեայով: Նրանք ագրեսիա են սկսել նաև ասիական մյուս ժողովուրդների դեմ: Տրումենը հրաման է արձակել օգնել նաև Ֆորմոզայում նստած իր գործակալ Չան Կայ-շիին, օգնել ֆրանսիական գաղութարարներին՝ Վյետնամի ժողովրդի դեմ գաղութային պատերազմը ուժեղացնելու համար: Ամերիկյան իմպերիալիզմը ցույց տվեց, որ նա ճնշված ժողովուրդների ազգային ազատագրական շարժման ամենաոխերիմ թշնամին է:

Իմպերիալիստական, հակադեմոկրատական լագերի դեմ հանդիման կանգնած է հակաիմպերիալիստական, դեմոկրատական հզոր լագերը՝ Սովետական մեծ Միության գլխավորությամբ: Հակաիմպերիալիստական, դե-



մոկրատական լագերը, որի նպատակն է պայքարել նոր պատերազմի սպառնալիքի դեմ, իմպերիալիստական էքսպանսիայի դեմ, ամրապնդել դեմոկրատիան և արմատախիլ անել ֆաշիզմի մնացորդները՝ նվաճել է ամբողջ աշխարհի միլիոնավոր խաղաղասեր, հասարակ մարդկանց համակրանքն ու աջակցությունը: Այդ լագերը աճել և հզոր ուժ է դարձել: Վերջին տարիներին նրա շարքերը մտավ չինական 475 միլիոնանոց հզոր ժողովուրդը, որը իր հերոսական կոմպարտիայի ղեկավարությամբ ջախջախեց և երկրից դուրս վռնդեց ամերիկյան իմպերիալիզմին վաճառված Չան Կայ-շիի կլիկին: Այդ լագերի շարքը մտավ Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկան:

Հակաիմպերիալիստական, դեմոկրատական լագերի աջակցությամբ ամբողջ աշխարհի խաղաղասեր մարդիկ միավորվելով՝ ստեղծեցին խաղաղության կողմնակիցների համաշխարհային կազմակերպված ճակատ, որի ուժերը աճել, ընդարձակվել և հզոր ուժ են դարձել:

1949 թվի ապրիլին տեղի ունեցած խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսում կազմակերպորեն ձևավորվեց խաղաղության կողմնակիցների համաշխար-

հային ճակատը, ստեղծվեց կոնգրեսի Մշտական կոմիտե։ Մեկ տարվա ընթացքում նրա ուժերը աճեցին հսկայական չափերով։
Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի կազմի մեջ են մտնում 52 երկրների ներկայացուցիչներ։ Խաղաղության կողմնակիցների շարժումը միավորում է ավելի քան 800 միլիոն մարդ։ Նրան են հարում այնպիսի հզոր միջազգային կազմակերպություններ, ինչպիսիք են Պրոֆմիությունների Համաշխարհային Ֆեդերացիան, Կանանց միջազգային դեմոկրատական Ֆեդերացիան, Դեմոկրատական երիտասարդության Միջազգային Ֆեդերացիան, Ուսանողների միջազգային միությունը, որոնք իրենց շարքերում միավորում են ավելի քան 220 միլիոն մարդ։
Խաղաղության համար սկսված շարժումը հատկապես նոր թափ ու ծավալ ստացավ Կորեայում ամերիկյան ագրեսիան սկսվելուց հետո։ Ամերիկյան իմպերիալիստների բացահայտ ագրեսիան կորեական ժողովրդի դեմ, կորեական խաղաղ քաղաքների ու գյուղերի բարբարոսական ռմբակոծությունները խորը զայրույթ են առաջացրել ժողովուրդների մեջ։ Բոլոր երկրներում տեղի ունեցող միտինգներում ու ցույցերում աշխատավոր-



ները իրենց համերաշխությունն են արտահայտում կորեական ժողովրդին՝ նրա հերոսական, ազգային-ազատագրական պայքարում ընդդեմ ամերիկյան իմպերիալիզմի։
Խաղաղության շարժման հետագա զարգացման գործում խոշոր քայլ հանդիսացավ Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմյան սեսիայի որոշումները։
Արտահայտելով ամբողջ պրոգրեսիվ մարդկության մտքերն ու զգացմունքները, սեսիան կոչ ընդունեց, որով պահանջում է արգելել ատոմային զենքը և պատերազմի հանցագործ հայտարարել այն կառավարությանը, որն առաջինը կգործադրի մարդկանց մասսայական ոչնչացման այդ զենքը։
Ստոկհոլմյան կոչը մեծ արձագանք գտավ ամբողջ աշխարհում։ Արդեն 250 միլիոն մարդ ստորագրել են այդ կոչը։ 250 միլիոն մարդ դատապարտել են ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականությունը։
Ահա մի քանի թվեր ու փաստեր, որոնք ցույց են տալիս խաղաղության համար սկըսված շարժման թափն ու ծավալը։ Ստոկհոլմյան կոչի տակ Չինաստանում ստորագրել են 50 միլիոն մարդ, Ֆրանսիայում հա-

վաքվել է 10 միլիոն ստորագրություն, Իտալիայում մինչև օգոստոսի 1-ը 14,6 միլիոն ստորագրություն։ Կորեայում ամերիկյան ագրեսիան սկսվելուց հետո Իտալիայում կոչի տակ ստորագրել են 10,5 միլիոն մարդ։

Ամերիկյան պրոֆմիութենական խաղաղության պաշտպանության կոմիտեն խնդիր է դրել մինչև ամառվա վերջը երկրում հավաքել 5 միլիոն ստորագրություն։ Արդեն հավաքված է առաջին միլիոն ստորագրությունները, ըստ որում 400 հազարը հավաքվել է Կորեայում սկսված ագրեսիայից հետո։

Նույնիսկ ֆաշիստական Իսպանիայում և Պորտուգալիայում, չնայած անասելի տեռորին ու հալածանքներին, անլեգալ պայմաններում հավաքվել է տասնյակ հազարավոր ստորագրություն։

Այսպիսով, աշխարհի միլիոնավոր բարի կամքի մարդիկ, անկախ կրոնական պատկանելությունից, քաղաքական համոզմունքներից միավորվել, կազմել են խաղաղության հզոր ճակատ, որը օրեց-օր աճում, ամրապնդվում և ընդարձակվում է։ Այդ ճակատը ընդունակ է սանձահարել պատերազմի ամերիկա-անգլիական հրձիգներին, որոնք դավադրություն են կազմակերպում խաղաղության և դեմոկրատիայի դեմ։



Մեր սոցիալիստական Հայրենիքը խաղաղության ամուր և հուսալի հենարան է, ամբողջ մարդկության հույսն ու ապավենը։ Սովետական կառավարության ստալինյան արտաքին քաղաքականությունը ամբողջովին ուղղված է խաղաղության ամրապնդմանը։ Սովետական կառավարության առաջարկությունը՝ սպառազինությունները կրճատելու, ատոմային զենքն արգելելու մասին, սովետական կառավարության պայքարը Գերմանիայի և Ճապոնիայի դեմոկրատացման համար, վառ արտահայտություն են այն բանի, որ Սոցիալիստական պետության արտաքին քաղաքականությունը ուղղված է մեծ նպատակի՝ ժողովուրդների խաղաղության և անվտանգության նպատակին։ Ահա թե ինչու սովետական ամբողջ ժողովուրդը և միլիոնավոր մարդիկ մեր երկրի սահմանից դուրս պաշտպանում են Սովետական կառավարության քաղաքականությունը։

Սովետական ժողովուրդը մեծ ոգևորությամբ ողջունեց խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի բանաձևը Ստոկհոլմյան կոչի տակ ստորագրություններ հավաքելու մասին։ Հունիսի 30-ից մինչև օգոստոսի 1-ը 115 միլիոն 275 հազար 940 սովետական քաղաքացի իրենց ստորագրու-

թյունը դրին Ստոկհոլմյան կոչի տակ։ Այդ մեծագույն ավանդ է, որ սովետական ժողովուրդը մտցրեց խաղաղության գործում։ Աշխատավորության անթիվ ժողովներում ու միտինգներում սովետական մարդիկ հայտարարում են, որ նրանք հավանություն են տալիս և պաշտպանում են իրենց կառավարության արտաքին քաղաքականությունը, և պատրաստ են մյուս ժողովուրդների հետ միասին պաշտպանել խաղաղությունն ու անվտանգությունը ամբողջ աշխարհում։ Սովետական մարդիկ զայրույթով են դատապարտում ամերիկյան իմպերիալիստների ագրեսիան Կորեայում և միահամուռ կերպով պահանջում են. «Ձեռքներդ հեռու Կորեայից»։

Ամբողջ երկրի գործարաններում, հանքերում ու երկաթուղիներում, կոլխոզներում ու սովխոզներում մարդկանց մեջ ծնվեց ու կյանքի մեջ ամրացավ պարզ և հասարակ մի լոզունգ «Ստախանովյան հերթափոխ խաղաղության համար»։ Դրա մեջ արտացոլված է սովետական մարդկանց անհուն վճռականությունը՝ ամրացնել սոցիալիստական Հայրենիքի— խաղաղության այդ անառիկ ամրոցի հզորությունը։ Այդ լոզունգով սովետական մարդիկ ամեն մի օր նշանավորում են արտադրական նոր հաղթանակներով ի



փառս մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու հզորացման։

Կանգնելով խաղաղության հերթափոխի, Կրիվոյ-Ռոգի Կիրովի անվան հանքավարչության հորատող Յակով Շապտիլեյը հուլիսի 14-ին նորման կատարեց 1852 տոկոսով, Հարավային երկաթուղու մեքենավար Միխայիլ Օվչարենկոն օրվա միջին վազքը հասցրեց 448 կիլոմետրի՝ 276 կիլոմետր նորմայի դիմաց, Մագնիտոգորսկի պողպատագործ Զախարովի բրիգադան հուլիսի առաջին կիսում տվեց 307 հազար ռուբլու խնայողություն։

Սովետական մարդիկ այսպես են պատասխանում պատերազմի հրձիգներին, խաղաղության դեմ դավադրություն սկսած ամերիկա-անգլիական իմպերիալիստներին։

Հանուն խաղաղության ամրապնդման հերոսական աշխատանք է կատարվում նաև մեր ռեսպուբլիկայի գործարաններում, ֆաբրիկաներում, հանքերում, կոլխոզային դաշտերում։ Ռեսպուբլիկայի աշխատավորները բազմամարդ միտինգներում իրենց խոր զայրույթն արտահայտելով ամերիկյան իմպերիալիզմի հափշտակողական քաղաքականության դեմ, ստախանովյան աշխատանքով ամեն օր արտադրական նոր նվաճումներ են

ձեռք բերում։ Կանգնելով ստախանովյան հերթափոխի, մեր գործարանի բանվորներ Գեղամ Հակոբյանը, Թավուշ Դավթյանը, Սիրուշ Ջանիկյանը, Վարդուշ Բաղրամյանը, Գյուլխասր Պողոսյանը, Վարսիկ Հակոբյանը, Բավական Ղարիբյանը, Ցենյա Վարդանյանը, Ասլի Կարապետյանը իրենց արտադրական պլանները սիստեմատիկորեն կատարում են 150—250 տոկոսով։ Մեր բանվորների եռանդուն աշխատանքի շնորհիվ ինչպես ամբողջ գործարանը, այնպես էլ մեր ցեխը հուլիս ամսվա պլանը գերակատարեցին, գործարանը նվաճեց ռայոնական փոխանցիկ դրոշը, իսկ մեր ցեխը՝ գործարանային փոխանցիկ դրոշը։

Սակայն չի կարելի հանգստանալ ձեռք բերված նվաճումներով։ Մենք պետք է կրկնապատկենք մեր եռանդը՝ արտադրական էլ ավելի մեծ հաղթանակներով դիմավորելու Սովետական Հայաստանի փառապանծ երեսնամյակը։ Դա կլինի մեր լավագույն պատասխանը պատերազմի հրձիգներին, մեր ներդրումը խաղաղության պաշտպանության մեծ գործին։



# ԱԳԻՏԱՏՈՐ ԱԶԻԿ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի եռուն օրերից մեկն էր։ Դաշտում, աշխատանքի ընդմիջման ժամին Արտաշատի շրջանի Մխչյանի կոլխոզի № 13 բրիգադայի ագիտատոր Ազիկ Վարդանյանի շուրջն էին հավաքվել կոլխոզնիկները։ Ագիտատորի հերթական զրույցը նվիրված էր մի կարևոր թեմայի՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «Հայկական ՍՍՌ-ի կոլխոզներում ցորենի և բամբակի արտադրությունն ավելացնելու, խոտերի և թռչունների գլխաքանակը ավելացնելու և հանրային անասնապահության մթերատվությունը բարձրացնելու միջոցառումների վերաբերյալ» որոշման կենսագործման ուղղությամբ Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի միջոցառումների պարզաբանմանը։

Այդ թեման չափից դուրս հետաքրքրեց կոլխոզնիկներին և նրանք լարված ուշադրությամբ լսեցին զրույցը։ Ագիտատորը գրավիչ կերպով պատմեց այդ կարևոր մի-

ջոցառման մասին. ցույց տվեց մեր ռեսպուբլիկայի հետագա ծաղկման գործում նրա վիթխարի նշանակությունը։

— ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը,— ասաց ագիտատորը,— դա Սովետական Կառավարության, բոլշևիկների պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի կողմից Սովետական Հայաստանի աշխատավորության նյութական բարեկեցության հետագա բարձրացման, մեր կոլխոզների տնտեսական հզորության նոր վերելքի, նրանց կազմակերպչա-տնտեսական ամրապնդման նպատակով եղած հոգատարության նոր, վառ արտահայտությունն է։ Հացահատիկային կուլտուրաների ցանքերի տարածությունը Հայաստանի կոլխոզներում ավելանալու է 50 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 80 տոկոսով։ Այդ նպատակով Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը և ՀԿ(բ)Պ Կենտկոմը միջոցառումներ են ձեռնարկել Արարատյան դաշտավայրի և Արազդայանի հողերի չորացման և ոռոգման, ջրհան կայանների կառուցման, ցորենի ցանքի տակ առնվող նոր հողերի յուրացման ուղղությամբ։ Այդ որոշման մեջ խոշոր ուշադրություն է դարձված կոլխոզների տեխնիկական հագեցվա-



ծության, դաշտերի պարարտացման հարցերին։

Ագիտատորն ընդգծեց, որ այդ որոշման մեջ նշված միջոցառումների արագ կենսագործումը կապահովի ռեսպուբլիկայի հացի պահանջը սեփական արտադրության հաշվին։ Ընկ. Վարդանյանն իր զրույցը սերտորեն կապեց իրենց կոլխոզի կոնկրետ խնդիրների հետ, որոնք անմիջականորեն բխում են Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի որոշումից։ Նոր հողերի յուրացման հաշվին կոլխոզում, այս տարի, հացահատիկային կուլտուրաների տարածությունն ավելացել է 130 հեկտարով։ Այժմ անց է կացվում ճահճացած հողերի չորացում, որը հնարավորություն կտա հետագայում է՛լ ավելի ընդարձակելու հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը։

Մխչյանի կոլխոզը Արտաշատի շրջանի բամբակագործական խոշոր կոլխոզներից մեկն է։ Բամբակն այստեղ զբաղեցնում է 390 հեկտար տարածություն։ Ահա թե ինչու ագիտատորը հանգամանորեն կանգ առավ միաժամանակ բամբակի արտադրության բարձրացման հարցի վրա, ցույց տալով, թե ինչ է պահանջվում կոլխոզնիկներից

պարտիայի և կառավարության այդ առաջադրանքը հաջողությամբ կենսագործելու համար։

Սակայն մեկ զրույցով հնարավոր չէր ըսպառել այդ որոշման մեջ շոշափված բոլոր հարցերի մանրամասն շարադրանքը։ Որպեսզի այդ հարցերից յուրաքանչյուրին տրվեր սպառիչ պատասխան, այդ փաստաթղթի էությունը բրիգադայի անդամների գիտակցությանը հասցվեր, ագիտատոր ընկ. Վարդանյանը որոշեց այդ թեմայի մասին ևս մի քանի զրույցներ անցկացնել։ Իրոք, նրա հետագա երկու-երեք զրույցները նվիրված էին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՀԿ(բ)Պ ԿԿ-ի վերոհիշյալ որոշման պարզաբանմանը, որը առաջ բերեց բրիգադայի անդամների մեջ աշխատանքային նոր վերելք։ Բրիգադան պարտավորվեց հացահատիկային կուլտուրաների 15 հեկտարի բերքը հավաքել 3 օրում։ Այդ պարտավորությունը կատարվեց ժամկետից շուտ։ Հնձվորներ՝ Պետրոս Անդրեասյանը և Համիկ Վարդանյանը հնձի յուրաքանչյուր օրը կատարեցին 1,5—2 նորմա։ Հաջողությամբ ավարտվեց նաև հնձված հացահատիկի փոխադրման և կալսման աշխատանքները, որը հնարավորություն տվեց ժամկետից շուտ



կատարելու պետական հացամթերման պարտավորությունը. բրիգադան յուրաքանչյուր հեկտարից ստացավ 24 ցենտներ հացահատիկ։ Հաջողությամբ են ընթանում բրիգադայի բամբակի պլանտացիաների մշակության աշխատանքները։ Արդեն ավարտված է բամբակի հինգերորդ քաղհանը, վեցերորդ կուլտիվացիան, երրորդ ջուրը, լավ է կազմակերպված բամբակենու բուժումը։ Անցյալ տարի բրիգադան բամբակի 15 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 22 ցենտներ բամբակի բերք. նա պարտավորություն ստանձնեց այս տարի բամբակի 25,5 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 35 ցենտներ բամբակի բերք, իսկ առանձին օղակներ խոստացան հեկտարից ստանալ 40 և ավելի ցենտներ բամբակ։

Շատ հետաքրքրական զրույցներ է անցկացնում ընկ. Վարդանյանը միջազգային դրության հարցերի շուրջը։ Ամեն օր նա պատմում է Կորեայի իրադարձությունների մասին, այն մասին, թե ինչպես աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը կազմակերպված պայքար է մղում պատերազմի հրձիգների դեմ, ցույց տալով Սովետական Միության

առաջատար դերը ամբողջ աշխարհում խա-
ղաղության պաշտպանելու համար։
Մեծ են ագիտատորների անելիքները գյու-
ղատնտեսության առաջավորների, Սոցիա-
լիստական Աշխատանքի Հերոսների փորձի
տարածման գործում, որոնք համարձակորեն
ջարդում են հնացած նորմաները, հասնում
են աշխատանքային բարձր նորմաների, աշ-
խատանքի առաջավոր մեթոդների, միչու-
րինյան ագրոբիոլոգիական գիտության կի-
րառման ճանապարհով աճեցնում են ռե-
կորդային բերք։ Այդ կարևոր հարցի վրա իր
զրույցների ընթացքում ագիտատոր ընկ.
Վարդանյանը մեծ ուշադրություն է դարձ-
նում։ Քիչ առաջավորներ չունի նաև Մխչյա-
նի կոլխոզը։ Օրինակ, շարքային կոլխոզնի-
կուհի Համիկ Վարդանյանն անցյալ տարի
օրական հավաքում էր 150 կիլոգրամ բամ-
բակ, իսկ այս տարի բարձր ցուցանիշներ է
տալիս բամբակենու մշակման գործում։ Նը-
րանից ետ չեն մնում նրա քույրը՝ Սոնյա
Վարդանյանը և կոլխոզնիկուհի՝ Յուղիկ Ծա-
ռուկյանը, որոնք քաղհանի օրվա առաջա-
դրանքը կատարում են 200—250 տոկոսով։
Հանգամանորեն ուսումնասիրելով նրանց
աշխատանքի մեթոդները, քաղհանի ժամա-
նակ ագիտատոր ընկ. Վարդանյանը վեր-



ջերս զրույց անցկացրեց «Աշխատել մեր առաջավորների օրինակով» թեմայով։ Նա-մանրամասն պատմեց, թե ինչպես են աշխատում այդ առաջավորները, թե ինչպիսի ճանապարհներով նրանք հասնում են բարձր արտադրողականության։ Մի քանի զրույցներ է ընկ. Վարդանյանը նվիրել Արտաշատի շրջանի Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ՝ Մարինոս Քարամյանի և Պայծառ Հովհաննիսյանի աշխատանքի փորձին, և նրանց օրինակով սովորեցնում բրիգադայի անդամներին հասնելու բամբակի բարձր բերքատվության։

Ագիտատորը՝ սոցիալիստական մրցության կազմակերպիչն է։ Այդ գործում ագիտատոր ընկ. Վարդանյանը լավ է կատարում իր պատվավոր դերը։ Նա սիստեմատիկաբար կազմակերպում է կոլխոզնիկների կողմից ստանձնած պարտավորությունների փոխադարձ ստուգում։ Մխչյանի կոլխոզի № 13 և № 8 բրիգադաները մրցում են միմյանց հետ։ Մեկ ամիս առաջ, ընկ. Վարդանյանի նախաձեռնությամբ, այստեղ կազմակերպվեց սոցիալիստական մրցության պայմանագրի փոխադարձ ստուգում։ Ստուգումը, որին մասնակցում էին երկու բրիգադաներից մեծ թվով կոլխոզնիկներ, կատարվեց ան-

միջականորեն դաշտում. ստուգման ենթարկվեցին աշխատանքի որակը, ցանքերի վիճակը և նրանց խնամքը։ Նման մասսայական ստուգումից հետո, նույն տեղում, դաշտում, կայացավ արտադրական խորհրդակցություն։ Կոլխոզնիկները փոխանակեցին իրենց աշխատանքի փորձը, բացահայտեցին թերությունները։ Փոխադարձ ստուգման արդյունքներին էր նվիրված բրիգադայի խլյիշովկայի հերթական համարը։ Այդ միջոցառումները մեծապես նպաստեցին բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, կոլխոզնիկների պատասխանատվությունը։

Ագիտատոր Ա. Վարդանյանի կողմից անցկացվող զրույցները մոբիլիզացիայի են ենթարկում կոլխոզնիկներին՝ հասնելու նոր նվաճումների, հաջողությամբ փակելու 1950 թ. գյուղատնտեսական տարին։

Բոլշևիկյան ագիտատորի խնդիրն է—խորը կերպով պարզաբանել աշխատավորներին մեր երկրի միջազգային և ներքին դրության հարցերը, այն լարված պայքարի էությունը, որը տանում է աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը պատերազմի հրձիգների դեմ, պատմել այն բոլոր նվաճումների մասին, որոնք սովետական ժողովուրդը ձեռք է բե-



րել Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, լայնորեն մասսայականացնել նորարարների աշխատանքային փորձը։ Ագիտատորը կոչված է արագ կերպով արձագանքելու աշխատավորների քաղաքական պահանջներին, իր ժամանակին պարզաբանել նրանց այն բոլոր հարցերը, որոնք նրանց հետաքրքրում են։ Այդ իր պատվավոր խնդիրը լավ է հասկացել և ազնվությամբ կատարում է Արտաշատի շրջանի Մխչյան գյուղի 26 կոմունարների անվան կոլխոզի № 13 բրիգադայի ագիտատոր Ազիկ Վարդանյանը, որը միաժամանակ հանդիսանալով այդ բրիգադայի բրիգադիր, խելացիորեն զուգակցում է իր կազմակերպական-տնտեսական աշխատանքը պարտիական-քաղաքական աշխատանքի հետ։

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1.

**ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը:**

*1. 1950 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանների կատարումը և գերակատարումը սոցիալիստական էկոնոմիկայի անընդհատ վերելքի վառ ապացույցն է։*

*2. Պետական միջոցների, հումքի, նյութերի, գործիքների խնայողությունը ժողովրդական տնտեսության զարգացման կարևորագույն պայմանն է։*

*3. Նորարարների և առաջավորների արժեքավոր նախաձեռնությունների տարածումը, սոցիալիստական մրցության լայնորեն ծավալումը հանդիսանում է թողարկվող*



*արտադրանքի ավելացման և ինքնարժեքի իջեցման կարևոր պայմաններից մեկը։*

*4. 1950 թվականի ծրագրերի ժամանակին շուտ կատարումը, հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանը կատարելու և գերակատարելու հիմնական պայմանն է։*

*5. Սովետական Միության ժողովրդական տնտեսության նոր, աչքի ընկնող հաջողությունները վառ կերպով վկայում են սոցիալիստական կարգի մեծ առավելությունները, նրա անհամեմատելի գերազանցությունը կապիտալիստական կարգերի նկատմամբ։*

Գրականություն.

*1. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին. ՍՍՌՄ Մինիստրների Սովետին Կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը, «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հուլիսի 29-ի համարում։*

*2. Ա. Գ. Զվերևի զեկուցումը՝ ՍՍՌՄ 1950 թվականի Պետական բյուջեի և 1948 ու 1949 թվականների Պետական բյուջեի կատարման վերաբերյալ. «Սովետական Հայաստան»-ի 1950 թվականի հունիսի 15 և 16-ի համարներում։*

3. Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանի կատարման մասին. Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Վիճակագրական վարչության հաղորդագրությունը. «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հուլիսի 1-ի համարում:

2.

**Մանր կոլխոզների խոշորացումը հանդիսանում է գյուղատնտեսության նոր ծաղկման ուղին:**

1. Կոմունիստական պարտիայի, սովետական կառավարության, ընկեր Ստալինի մշտական հոգատարությունը կոլխոզների հետագա կազմակերպչական-տնտեսական ամրապնդման և կոլխոզնիկների բարեկեցության բարձրացման մասին:

2. Խոշոր գյուղատնտեսական արտադրության առավելության լրիվ օգտագործումը, կոլեկտիվ տնտեսությունների բոլոր ճյուղերի հետագա զարգացումը, արտադրական և կուլտուր-կենցաղային շինարարության ծավալումը գյուղատնտեսության աշխատողների հիմնական խնդիրներն են:

3. Արտադրական բրիգադների հետագա



ամրապնդումը կոլխոզների նորանոր հաջողությունների հիմքն է հանդիսանում:

4. Կոլխոզների խոշորացումը— գիտության նվաճումները է՛լ ավելի լայնորեն արմատավորելու և գյուղատնտեսության մեջ առաջավոր տեխնիկան բարձր արտադրողականորեն օգտագործելու կարևորագույն միջոց է:

5. Բերքահավաքը ժամանակին և անկորուստ հավաքելը— պետական պարտավորությունների կատարման և կոլխոզների հզորացման գրավականն է:

6. Առաջավոր կոլխոզնիկների, սովխոզների, ՄՏ կայանների աշխատողների փորձի լայն մասսայականացումը՝ բարձր բերք ստանալու երաշխիքն է:

**Գրականություն.**

1. Ի. Վ. Ստալինի ճառը հարվածային կոլխոզնիկների Համամիութենական առաջին համագումարում. «Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատարակություն, էջ 486—500:

2. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և Համ Կ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ «1950 թվականի բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումները անցկացնելու մասին». «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հունիսի 16 և 17-ի համարներում:

3. Կոլխոզների կազմակերպչական-տնտեսական ամրապնդումը. «Պրավդա»-ի առաջնորդող հոդվածը տպագրված «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հուլիսի 21-ի համարում։

4. Կոլխոզային գյուղի աշխատողների կարևորագույն խնդիրները. «Պրավդա»-ի օգոստոսի 1-ի առաջնորդողը, տպագրված «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. օգոստոսի 2-ի համարում։

3.

**Կորեական ժողովրդի պայքարը միասնական, անկախ և դեմոկրատական Կորեայի համար:**

1. Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի ստեղծումը ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ ՍՍՌՄ-ի տարած հաղթանակի արդյունքն է։

2. Հյուսիսային Կորեայի տնտեսական և քաղաքական հաջողությունները լայն դեմոկրատական վերափոխումների կենսագործման հետևանք է։

3. ԱՄՆ-ի իմպերիալիստների կողմից ՍՍՌՄ, ԱՄՆ և Անգլիայի արտաքին գործերի մինիստրների Մոսկովյան խորհրդակցու-



թյան (1945 թվ.) որոշումների վիժեցումը Կորեան ստրկացնելու պլան է։

4. ԱՄՆ-ի զինված ինտերվենցիան Կորեայում — ագրեսիայի ուղղակի ակտ է Կորեական-ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկան գաղութացնելու և այն պլացդարմ դարձնելու ՍՍՌՄ-ի և Չինաստանի դեմ պատերազմելու համար։

5. Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի ժողովրդական բանակի հաջողությունները Լի Սին Մանի մարիոնետային «կառավարության» և ամերիկյան ինտերվենտների դեմ մղվող պայքարում։

6. Համաշխարհային հասարակայնության պահանջը վերջ տալ ԱՄՆ-ի ագրեսիան Կորեայում։

7. Սովետական Միության վճռական դերը ամբողջ աշխարհում խաղաղության համար մղվող պայքարում։

**Գրականություն.**— 1. Ի. Վ. Ստալինի պատասխանը պ-րն Ներուի դիմումին. «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հունիսի 19-ի համարում։

2. Սովետական կառավարության պատասխանը պ-րն Տրյուգվե Լիի հաղորդագրությանը. «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հունիսի 30-ի համարում։

3. ՍՍՌՄ արտաքին գործերի մինիստրի տեղակալ Ա. Ա. Գրոմիկոյի հայտարարությունը Կորեայում ամերիկյան զինված ինտերվենցիայի մասին: «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հունիսի 5-ի համարում:

4. ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստրության. «Սովետական Հայաստան»-ի հուլիսի 8-ի համարում:

5. Կիմ Իր Սենի դիմումը Կորեայի ժողովրդին:

6. Պրեզիդենտ Տրումենի հայտարարության առթիվ. «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հունիսի 29-ի համարում:

7. Յա. Մալիկի ելույթը Անվտանգության խորհրդի նիստում: «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. օգոստոսի 6-ի համարում:



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.—Ինչպես կազմակերպել մրցությունը: *Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 6000, 15 էջ, գինը 15 կոպ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Էկոնոմիկան և քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում: *Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 10.000, 15 էջ, գինը 15 կոպ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մեծ նախաձեռնություն: *Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 10.000, 41 էջ, գինը 45 կոպ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Պարենային հարկի մասին: *Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 8000, 54 էջ, գինը 55 կոպ.:*

Մ. ԳՈՐԿԻ.— Երկերի ժողովածու: *5-րդ հատոր, Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 5000, 597 էջ, գինը 13 ռ. 90 կոպ.:*

ՊԱՎԼՈ ՏԻՉԻՆԱ.— Հատընտիր: *Պետական հրատարակչություն, 1950 թ., տիրաժ 3000, 151 էջ, գինը 3 ռ. 30 կոպ.:*

Ջ. Ք. ԴԻԼԱՆՅԱՆ.— Բրինզա պանրի պատրաստումը կոլխոզներում: *Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 3000, 42 էջ, գինը 70 կոպ.:*

---

Պատասխանատու խմբագրի տեղակալ՝
Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ